# ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

ԽՄԲ. — Անակնկալ մը՝ այս յօդուածը: Գրողը, Պոլսեցի, որ տարիներէ ի վեր Փարիզ կը բնակի, մասնակցած է Խանասորի պատմական արշաւանքին: Կը հրատարակենք նոյնութեամբ. —

Ես, որ ականատես էի, անձամբ, այդ անմոռանալի ճակատամարտին, մինչեւ այսօր ալ յուզումով կը յիշեմ զայն. կարծես թէ՝ երէկ էր պատահած, մինչդեռ 49 տարի է անցած…

Խանասորի դաշտը տարածուած է երկու սարերու մէջտեղ, մէկ կողմը՝ Դերիկայ սարը, միւս կողմը Արաուլն է: Դաշտը կը սկսի Հիւսիսէն, որ կը տանի դէպի Աղբակ եւ Վան, իսկ Հարաւի ճանապարհը՝ դէպի Պարսկաստան:

Այս դաշտը միակ ճանապարհն է, որ՝ Հայաստանէն Պարսկաստան կը տանի: Հոն շարուած էին Շարաֆի 250 վրանները Հիւսիսէն դէպի Հարաւ, այնպէս որ, Հայաստանէն եկողը պարտաւոր էր անցնիլ նախ Շարաֆի երեք սպիտակ վրաններու առջեւէն եւ յետոյ 250 սեւագոյն, ամբողջ Մազրիկ ցեղի վրաններու ճամբով, որոնք շարուած էին դէպի Պարսկաստանի ուղղութիւնը: Այսպէս էր պատրաստեր Շարաֆը իր Թակարդը, որսալու համար հայ անպաշտպան գաղթականները:

1896—97ին ամենօրեայ կոտորածներու, կեղեքումներու, առեւանգումներու տարին, Հայաստանի հալածական հայրենակիցները մէկ ելք կը գտնէին, Թուրք եւ քիւրտ ոճրագործներու ձեռքէն ազատուելու մէկ միջոց, — գաղթել Պարսկաստան, եւ այնտեղէն ալ Ռուսաստան, իրենց հարազատ հայրենիքը եւ ինչքը ձգելով գազաններուն ձեռքը:

Բայց այդ արիւնկզակ Շարաֆը, այդ վամպիրը, Թունաւոր մամուկի նման իր ոստայնը լարած Խանասորայ դաշտին մէջ, կը հետապնդէր իր որսը, սպաննելով, կողոպտելով, իսկ գեղեցիկ կիները եւ մատղաշ աղջիկները իր հարէմը քշելով: Քանի՜ քանի անգամներ աղաչարարած էին որ դադրեցնէ իր հալածանքները, բայց ձիւաղը Համիտի խօսքերով, խոստումներով քաջալերուած, կարեւորութիւն չէր տար եւ կը շարունակէր իր ոճիրները:

Ահա այդ էր գլխաւոր պատճառը, որ Հ. Յ. Դաշնակցութիւնը պատրաստեց Խանասորի արշաւանքի ծրագիրը, ցոյց տալու համար թէ թշուառ գաղթականներն ալ պաշտպան մը ունին, որ կրնայ իրենց վրէժը լուծել:

Այնտեղ, Սալմաստի մէջ, մեր Փէտայի քաջերը, տասնեակներու խումբեր կազմած, կը սպասէին, այդ նշանակելի օրուան …:

Մեր առաջին տասնեակի գլխաւոր պաշտօնն էր արտասահմանէն եկած բոլոր փամփուշտները մաքրել, իւղերը սրբել, ճաթած կամ աւրուած փամփուշտները զատել, եւ այդ պակաս փամփուշտներով նշանառութեան փորձեր կատարել ամբողջ օրը: Ատոր շնորհիւ էր որ մեր տասնեակին անդամները անվրէպ նշանառուներ էին եւ բոլորն ալ զարգացած երիտասարդներ:

Ահաւասիկ անոնց անունները — բոլորն ալ ծանօթ՝ հայկական յեղափոխութեան պատմութեան մէջ:

Առաջինը Եփրեմն էր, Կուկունեանի այն ընկերներէն, որ Սիպերիայէն փախած էր եւ 3 ամիս քալելով հասած մինչեւ Պարսկաստան, մասնակցելու մեր արշաւանքին: Այդ երկար ճամբորդութենէն ոտքերը ուռեր էին, ուստի ստիպուեցաւ ձիաւորներու հետ մասնակցիլ, իսկ արշաւանքէն վերջ մնաց Թէհրան եւ մեծ դեր կատարեց այնտեղ: Երկար ատեն Իրանի յեղափոխութիւնը վարելէ վերջ, սպաննուեցաւ իր պարսիկ ընկերոջ կողմէ:

Երկրորդը, Սարգիս Օհանջանեանն էր (Ֆարհատ) որ Հայաստանի մէջ քանի քանի ճակատամարտներու մասնակցած էր եւ մեծ դեր կատարած յեղափոխական շրջանին:

Երրորդը, Թռուցիկ Գէորգը, Թիֆլիսցին, ուսուցիչ, ճեմարանը աւարտած, որ վերջը Պուլկարիոյ մէջ գործօն դեր կատարեց, պատիւ բերելով մեր կազմակերպութեան:

Չորրորդը Կրետացին էր, բնիկ Ղզլարցի, որ Կրետէի յեղափոխութեան միջոցին կ'ուզէր կամաւոր երթալ, Թուրքերուն դէմ կռուելու համար, բայց, մեր արշաւանքին մասնակցեցաւ: Ատոր համար էր որ Կրետացի կը կոչէինք: Դժբախտաբար, այդ վսեմ եւ ազնիւ հերոսը, որ արշաւանքի առտուն իմ ձախ կողմս էր, ճակատէն մէկ գնդակով սպաննուեցաւ, Շարաֆի վրաններէն տասը քայլ անդին:

Հինգերորդը Սաղաթէլ խանն էր, որ այդ նոյն առտուն ճակատամարտի մէջ, սրունքէն մեծ վէրք մը ստացած էր: Շարաֆի ձիերէն մէկուն վրայ բեռցուցինք եւ ուղարկեցինք Արաուլի սարալանջերը, այդ օրուան լուսաբացէն երկու ժամ առաջ, դէպի Խանասորի դաշտը: Նոյն իրիկունը զինագործ Կարօի հետ միասին պիտի նահատակուէին երկուքն ալ:

Վեցերորդը եւ եօթներորդը Միրզայեան երկու եղբայրներ, Թեհրանցի, Արա եւ Յովսէփ: Վերջինը Թեհրանի մէջ մաքսատան կարեւոր պաշտօնեայ էր, ազնիւ հայրենասէրներ երկուքն ալ:

Ութերորդը, Արշակը, Նիկոլ Դումանի փոքր եղբայրը, որ Թախանձագին խնդրած էր եղբօրմէն, մասնակցելու համար:

Իններորդը, Փոքր Կարօն, Հաշտարխանցին, որ արշաւանքէն վերջ Պոլիս էր գացած, այնտեղ, ուրիշ յեղափոխական ընկերներու հետ եւ միասին կախաղան էին բարձրացած:

Տասներորդը ես էի, Խանասորցին, այս տողերը գրողը: Հաւանաբար միակն եմ որ ողջ եմ մնացեր եւ ահա կը փորձեմ նկարագրել արշաւանքը, մօտ կէս դար վերջը:

×

Խանասորի Արշաւանքը…

1897 Յուլիս 25ին լուսնալու գիշերը, մեր երկու հարիւր յիսուն հայդուկներու գունդը եւ յիսուն ձիաւորներու ջոկատը ամբողջ գիշերը քալելով, Սալմաստէն դէպի Թուրքիոյ սահմանը անցնելով, Արաուլ սարի լանջերէն կ'իջնէինք հանդարտ քայլերով, Խանասորի դաշտի ուղղութեամբ: Թէեւ աստեղազարդ, բայց խիստ մութ էր այդ գիշերը: Հեռուէն հազիւ կը նշմարուէին վրանաձեւ շուքեր միայն:

Արշալոյսին մօտ երկու ժամ էր մնացեր, երբ մեր յիսուն ձիաւորներու ջոկատը մեզմէ բաժնուեցաւ, դաշտին արեւմտեան կողմը, իսկ մեր տասնեակը կ'ուղղուէր դէպի հիւսիսային կողմը, ուր հեռուէն կը նշմարուէին Շարաֆի երեք սպիտակ վրանները: Իսկ Մազրիկ ցեղի սեւագոյն վրանները, երկու հարիւր յիսուն, շարուած էին դէպի Հարաւ:

Մեր առաջին տասնեակը խումբին առջեւէն կ'երթար. իսկ մնացեալ քսանըչորս տասնեակները անոր կը հետեւէին:

Արշալոյսին հազիւ մէկ ժամ էր մնացեր, երբ մեր առաջին տասնեակը, յամր քայլերով, առանց աղմուկ հանելու, գաղտագողի կը մօտենար Շարաֆի երեք սպիտակ վրաններուն:

Նիկոլ Դուման յիսնապետի դերը ունէր այդ օրը, իսկ Վարդանը ընդհանուր հրամանատարի:

Արաուլ սարէն իջնելով մեր բանակը այնպիսի դիրք մը բռնեց որ մեր առաջին տասնեակը միայն տասը քայլ հեռու էր Շարաֆի վրաններէն, իսկ վերջին քսանեւհինգերորդ տասնեակը 40—50 քայլ հեռու: Այնպէս որ հարաւէն մեր ձիաւորներու գնդակները եւ արեւելքէն մեր արձակած գնդակները խաչաձեւ կը զարնէին եւ այդ ձեւով արձակուած գնդակներէն հրաշքով միայն կարելի էր ազատիլ: Տարաբախտաբար այդ հրաշքը տեղի ունեցաւ նոյն օրը:

Լուսինը վաղուց ծածկուած էր արեւմտեան սարերու ետեւը: Հակառակ աստեղազարդ երկնքին պլպլումներուն, անկարելի էր զանազանել մեր մօսին հրացաններուն կապտագոյն նշանակէտերը, թէեւ բոլորս անվրէպ նշանառուներ էինք:

Արշալոյսը դեռ չէր բացուած, մեր առաջին տասնեակը հազիւ մօտեցած էր տասը քայլ Շարաֆի վրաններուն, յարձակման փողը դեռ չէր հնչած, Աղբակի կոտորածներու, Հայաստանի աւերակներու վրէժի ժամը հասած էր…:

Յանկարծ, կարծես բնազդ մը արթնցուց բոլորը: Աքլորները սկսան կանչել, հարիւրաւոր ձիերը խրխնջել, շուները հաջել: Քիւրտերը «հաւա՛ր, հաւա՛ր» պոռալով իրենց խոր քունէն արթնցան: Այդ տարօրինակ, անսովոր գոռում – գոչումի ձայները, մեզ ժամանակ չձգեցին մէկ վայրկեան եւս սպասել, յարձակման փողը հնչելուն:

Մեր առաջին տասնեակը սկսաւ կրակել: Գնդակները կ'իյնային Շարաֆի այդ երեք վրաններուն վրայ: Մենք հազիւ տասը քայլ հեռու էինք:

Մեր հրացաններու ձայներէն ամբողջ գունդը սկսաւ կրակել, առանց հաշուելու փամփուշտները:

Այդ անդադար հրացանաձգութենէն հրացաններու խողովակները այնքան տաքցեր էին որ անկարելի էր ձեռք դպցնել:

Երբ այդ հրացանաձգութիւնը դադրեցաւ առաւօտ էր եւ Մազրիկ ցեղի վրանները կը վառէին:

(Մնացեալը յաջորդով) ԽԱՆԱՍՈՐՑԻ

# «Իսկէնտէրունը կ'ուզենք»…

(Մասնաւոր թղթակցութիւն Յառաջի)

Այն շրջանին, երբ Անգարայի մէջ տեղի կ'ունենային Թուրքեւլիբանանեան շփումներ, ընդհանուր համոզում էր՝ թէ Թուրքիա պիտի ուզէ խոստում ստանալ Սուրիայէ, թէ կը հրաժարի Իսքէնտէրունի մասին իր բոլոր պահանջներէն:

Բանակցութիւնները վերջ գտան, եւ Լիբանանի նախագահը վերադարձաւ: Յանկարծ, Սուրիական մամուլի մէջ ծայր տուաւ յարձակում մը՝ Թուրքիոյ եւ Թուրք թերթերու վրայ, երբ մանաւանդ Սուրիոյ վարչապետ Սատալլահ Ճապրի, յայտարարեց Յունիս 26ին.

— «Ո՛չ ոքի պարտականութիւն տուած ենք սուրիական խնդիրներով զբաղելու: Թուրքիոյ եւ Սանճաքի հանդէպ մեր դիրքը ծանօթ է, եւ ոեւէ փոփոխութիւն չկայ կացութեան մէջ»:

Հիմնուելով այս յայտարարութիւններուն վրայ, ահա թէ ինչ կը գրէ Դամասկոսի «Էլ-Իսթիքլալ Էլ Արապի» թերթը.

— «Ալէքսանտրէթի խնդիրը՝ մահու եւ կենաց հարց է մեզի համար: Մեր դժբախտութիւնն եւ մարդկային քաղաքակրթութեան ամօթը կը կազմէ ներկայի կացութիւնը այդ հողամասին, որ բռնօրէն խլուեցաւ մեզմէ:

« Եթէ Թուրքերը կը կարծեն՝ թէ մոռցանք Սանճաքը, չարաչար կը սխալին: Քաղցր խօսքերով եւ փայփայիչ յայտարարութիւններով՝ կարելի չէ կատարուած իրողութիւն մը հարկադրել մեզի, երբ նկատի ունենանք մանաւանդ, թէ Իսքէնտէրունով կորսնցուցինք ոչ միայն բերրի հողամաս մը, այլեւ մշակութային, քաղաքական եւ զինուորական մեծ առաւելութիւններ, եւ Միջերկրականի մեր կարեւորագոյն նաւահանգիստը:

«Սանճաքի արաբ, հայ եւ քիւրտ բնակչութիւնը՝ դրեթէ զէնքի ուժով հեռացաւ, եւ ընտրութիւնները խարդախուեցան ուղղակի, երբ հանրաքուէ տեղի ունեցաւ:

«Կը ցաւինք միայն Իրաքի վրայ որ հաշտուեցաւ կատարուած իրողութեան հետ: Ատեն է, որ Արաբական Դաշնակցութիւնը անդրադառնայ կացութեան լրջութեան, եւ ոչ միայն Սուրիոյ, այլ արաբական աշխարհի շահերուն համար իսկ, չհրաժարի Սանճաքի շուրջ իր պահանջներէն: Չենք գիտեր, թէ Իրաք ինչ պիտի խորհէր մեր մասին, եթէ մենք ալ, մեր կարգին, համաձայնըլլայինք՝ որ Թուրքիա կցէ Մուսուլը իր հողերուն, ու Իրան՝ գրաւէ Պասրան…: Կը թուի թէ Թուրքիոյ նպատակն է շահիլ Լիբանանը, Իրաքը եւ Արաբ այլ երկիրները, առանձին ձգելու համար Սուրիան, եւ հարկադրելու՝ որ համակերպի ստեղծուած կացութեան: Ոճրագործութիւն պիտի ըլլար այդպիսի քայլ մը»:

Իսկ Լաթաքիոյ թերթերէն «Էլ – Լա'ի Էլ - Քավմի» կը գրէ նոյն թուականով (28- 6 46).

— « Թուրք մամուլը, լորձնաշուրթն կը փառաբանէ Թուրքեւարաբ եղբայրակցութիւնը, գառան մորթի տակ պարտկելով գայլի ախորժակներ: Կը թուի, թէ կ'ուզեն մոռնալ Թուրքեւսուրիական տարակարծութիւնները, ու նուիրականացնել մանաւանդ Սանճաքի կցումը Թուրքիոյ:

« Չենք գիտեր, թէ ինչպէ՞ս կարելի է ճառել Թուրքեւարաբ բարեկամութենէ մը, երբ անարդարօրէն խլուած կը մնայ մեր հայրենի հողերուն կարեւոր մէկ մասը:

« Թուրքեւարաբ բարեկամութիւն մը խնդրոյ առարկայ իսկ չի կրնար ըլլալ, երբ չէ վերադարձուած Սանճաքը: Մենք պէտք չունինք այս ձեւի բարեկամութեան մը: Մեր Թուրք դրացիները պէտք է լաւ գիտնան, թէ Իսքէնտէրունը աւանդ մըն է, մեզի յանձնուած: Ու մենք, գերագոյն պարտականութիւնն ունինք այդ աւանդը փոխանցելու սերունդէ սերունդ »: Մ.

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԸ ՍԵՎՌԱՆԻ ՄԷՋ

ՍԵՎՌԱՆ. — Կիրակի, 21 Յուլիս, տեղի ունեցաւ Ֆր. Կապոյտ Խաչի Սեվռանի մասնաճիւղի ընդհ. ժողովը: Օրակարգն էր. — 1. Հաշուետուութիւն, 2. Օդափոխութեան կայան. — 3. Նոր վարչութեան ընտրութիւն: Կը նախագահէր Շրջ. վարչութեան քարտուղարուհի Տիկին Ա. Թադէոսեան:

Հրաժարեալ վարչութեան ատենադպրուհի Տիկին Ա. Քէօսէեան ներկայացուց վարչութեան բարոյական եւ նիւթական գործունէութեան վեցամսեայ հաշուետուութիւնը: Գլխաւորաբար յիշեց թէ 38 մեծ ու փոքր մանչեր եւ աղջիկներ համախմբուած Կ. Խաչի ծաղկոցին մէջ, հայեցի դաստիարակութիւն կը ստանան եւ դասերուն կը հետեւին մեծ ուշադրութեամբ, մինչդեռ քանի մը ամիս դրեթէ անտարբեր էին: Գալով նիւթական հաշուետուութեան, վեց ամսուան ընթացքին մասնաճիւղը մուտք ունեցած է 101.978 ֆրանք, ելք՝ 71.996.50, պատրաստ դրամ 29.981.50, առանց հաշուելու գոյքերը: Ընդհ. ժողովը իր գոհունակութիւնը յայտնելով քուէարկութիւն կատարուեցաւ եւ ընտրուեցան հետեւեալ ընկերուհիները. — Տիկիններ Վ. Յովհաննէսեան (ատենապետուհի) եւ Ա. Քէօսէեան (ատենադպրուհի, վերընտրուած), Օր. Ա. Ոսկանեան (գանձապետուհի), Տիկիններ Մ. Կիւլեան եւ Վ. Անտոնեան խորհրդականներ:

Այս առթիւ նորընտիր վարչութիւնը քաջալերուելով իրենց եղած վստահութենէն իր շնորհակալութիւնը կը յայտնէ իր բոլոր ընկերուհիներուն եւ կը խոստանայ նոր առաջադրութիւններով աւելի եւս մղում տալ գործին: Թղթակից

ՄԺԵՂՆԵՐՈՒ ԴԷՄ պատերազմ յայտարարեցին Գերմանիոյ ամերիկեան շրջանին զինուորական իշխանութիւնները: Բժշկական տեղեկագրի մը համաձայն, ճահճատենդի դէպքերը 9 առ հարիւրէն բարձրացած են 28 առ հարիւրի, մէկ շաբթուան ընթացքին: Օդանաւ մը մժեղասպան փոշի պիտի ցանէ մժեղներով լեցուած ճահիճներու եւ լիճերու վրայ, իսկ հրասայլերն ալ քարիւղի խառնուրդ մը պիտի սփռեն: Մասնաւոր կայաններ պիտի հաստատուին, միեւնոյն նպատակով:

50.000 ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐ Թափօր մը կազմեցին Վարշաւայի մէջ, Վիսթուլայի նորաշէն կամուրջին բացման առթիւ: Այս առթիւ ցոյցեր եղան յանուն ժողովրդապետութեան ազատութեան:

ՍՏԱՑԱՆՔ. — Ըմբոստութեան եւ բողոքի ձայներ: Մէկ էջ ոտանաւոր՝ տասը նահատակներու նկարներով: Գրեց՝ Ա. Ռշտունի: Գին 5 ֆրանք:

